## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՍԳԱՀԱՆԴԷՍԸ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

ՏԷՍԻՆ, 28 Ապրիլ.— Համազգային սգատօնը մեր գաղութն ալ տօնեց արժանավայել կերպով, այսօր, շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Հայ Ժողովրդային տան մէջ, նախաձեռնութեամբ Ազգ. Ճակատի եւ մասնակցութեամբ Հայ Աւետարանական Համայնքի ներկայացուցիչներուն: Առաջին անգամ էր որ մեր մէկ միլիոնի զոհերուն սգատօնը համազգային բնոյթ կը կրէր:Ներկայ էր խուռն բազմութիւն մը: «Յառաջ»ի նեղ ծաւալը նկատի ունենալով, կ'ամփոփեմ սգատօնին էական մասերը: Օրուան Նախագահը, Պ. Մովսէսեան բացատրեց սգատօնին իմաստը եւ ժողովուրդը հրաւիրեց մէկ վայրկեան յոտնկայս լռութեամբ յարգել յիշատակը 1915ի բարբարոսութեան զոհերուն: Ներկայացուեցաւ կենդանի պատկեր մը փոքրերու կողմէ, պատրաստութեամբ Օր. Մ. Ճիզմէճեանի որ խոր տպաւորութիւն թողուց ներկաներուն վրայ: Օրուան պատշաճ արտասանութիւններ ըրին՝ Օր. Փանոսեան, Օր. Խորէնեան եւ Օր. Թ. Թագւորեան: Մեներգեցին՝ Օր. Վ. Ղազարեան եւ Պ. Մուրաճեան (Լիոնէն): Գեղարուեստական բաժնին կը մասնակցէր Պ. Կալվին Պարսումեան իր երկսեռ երգչախումբով, որ երգեց նախ՝ Կոմիտասի «Տէր Ողորմեա»ն եւ հանդէսի փակման՝ Լռեց ամպերը:

Առաջին բանախօսն էր Փրօֆ. Խայիկեան, որ նախ պատմականն ըրաւ Հայուն կրած անվերջ արիւնահեղութեանց եւ պատճառները վերագրեց քաղաքական, տնտեսական եւ կրօնական ուժերու հակամարտութեանց: Յիշեց մեծ պետութեանց մրցակցութիւնը: Ապա ներկայացուց հայ ժողովուրդին արժանիքները եւ կոչ ըրաւ նոր սերունդին, որ հաւատարմօրէն հետեւի նահատակներու պատգամին:

Երկրորդ բանախօսն էր Պ. Մ. Գեղունի որ պարզեց Հայուն դարաւոր անցեալը իր տառապանքներով ու զոհերով: Ինք եւս այդ արիւնահեղութեանց պատճառ նկատեց միջազգային աշխարհակալութեան անյագ նպատակները, մեծ ազգերու քաղաքական - տնտեսական նենգ հաշիւները: Եւ հրաւիրեց ներկաները մեկդի դնել անցեալի գաղափարական վէճերը եւ միացեալ ջանքերով աշխատիլ ներկայ Հայաստանի բարգաւաճման:

Գ. Յ. Պօյաճեան

Տէսին.— Կիրակի, 29' Ապրիլ, տեղի ունեցաւ Լիոնի եւ Վիէնի Հ. Մ. Ը. Մ.ի քոյր մասնաճիւղերու ղնդակի խումբերու մրցումը, Տէսինի դաշտին վրայ: Ներկայ էին բաւական թիւով հայրենակիցներ: Լիոնը 2ի դէմ 3ով յաղթական ելաւ: Ջերմապէս կը շնորհաւորենք մեր մարզիկները:

## ԵՐՈՒԱՆԴ ՏԷՐ - ԱՆԴՐԷԱՍԵԱՆԻ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

Լիօնէն կը գրեն.— Շաբաթ, 28 Ապրիլ, կատարուեցաւ Երուանդ Տէր-Անդրէասեանի յուղարկաւորութիւնը: Հայ գրականութեան եւ մշակոյթին հաւատաւորները եկած էին իրենց յարգանքն արտայայտելու՝ խոնարհելով վաստակաւոր ուսուցչին եւ հրապարակագրին գերեզմանին վրայ: Լիոնի համեստ մատուռէն մարմինը փոխադրուեցաւ գերեզման, որուն դրան առջեւ Զմռնիք ուզեցին, ցոյց տալու համար թէ ո՛րքան կը սիրեն հայ լեզուի անխոնջ մշակը, դագաղը ուսամբարձ տարին կառքէն մինչեւ գերեզման, ուր դամբանականներ խօսեցան Փրօֆ. Խայիկեան, Վ. Զուլլէրեան, Վարժապետեան, իսկ Զ.Ո.Մ. կողմէ գրաւոր յարգանքի խօսք կարդաց Ղազար Ղազարեան:

---

եւ անգլ. գիծերուն մէջ մտաւ: Խումբին գլուխը կը գտնուէր զօրավար - ծովակալ Ֆօն Ֆրիտպէրկ, ընդհ. հրամանատար գերման նաւատորմին մէջ: Պատուիրակները առաջնորդուեցան մառէշալ Մոնթկոմըրիի վրանը: Մառէշալը դուրս ելաւ, եւ հարցուց, իբրեւ թէ առեւտրականներ ըլլային,— «Ի՞նչ կ'ուզէք»: Գերմանները պատասխանեցին.

— Եկած ենք մառէշալ Պուշի կողմէ, խնդրելու որ ընդունիք անձնատրութիւնը երեք բանակներու որոնք այժմ կը նահանջեն Ռուսերուն առջեւ Մէքլէմպուրկի շրջանին մէջ: Մենք շատ մտահոգ ենք գերման քաղաքացիներու կացութեան մասին. անոնք խուճապահար կը փախչին երբ գերման բանակները կը նահանջեն ռուսական յառաջխաղացութեան առջեւ: Կը խնդրենք ընդունիլ այս երեք բանակներուն անձնատրութիւնը:

Անգլիացի հրամանատարը պատասխանեց.

— Ո՛չ, այդ գերման բանակները Ռուսերուն դէմ կը կռուին. հետեւաբար, եթէ անձնատուր կ'ըլլան ո եւ է մէկուն, պէտք է ըլլան Խ. Միութեան բանակներուն: Այս գործը կապ չունի ինծի հետ: Ես չեմ զբաղիր իմ արեւելեան թեւիս անցուդարձով: Ռուսերու գործն է այդ, քանի որ ռուսական ճակատ է: Կ'երթաք անձնատուր կ'ըլլաք խորհրդային հրամանատարներուն: Խնդիրը փակուած է:

Ասոր վրայ գերման հրամանատարները զինուորական բարդ եւ այլազան ծրագիր մը ներկայացուցին, որուն համաձայն անգլ. Բ. բանակը պիտի յառաջանար յամրաբար, իսկ միաժամանակ գերման զօրքը պիտի նահանջէր կամաց կամաց: Այս գործողութիւնը կրնար քանի մը շաբաթ տեւել: «Մոնթի» պնդեց.— Ո՛չ. ես չեմ ուզեր ձեզի հետ քննել թէ ինչ պիտի ընեմ ապագային: Յետոյ յարձակողականի դիմելով.— Կը զարմանամ, արդեօք լուր ունի՞ք արեւմտեան ճակատի կացութենէն:

Եւ մէջտեղ հանեց իր գործողութեանց քարտէսը: Այս քարտէսը վերջին հարուածն եղաւ որ փութացուց մէկ միլիոն Գերմաններու անձնատրութիւնը:

Ճաշէն վերջ, «Մոնթի» — անգլ. մառէշալը — ետ կանչեց Գերմանները, նորէն խորհրդակցելու համար եւ այս անգամ ներկայացուց իր վերջնագիրը, ազդարարելով.

— Պէտք է հասկնաք երեք բան.— Առաջին՝ պէտք է առանց որ եւ է պայմանի ինծի յանձնէք Հոլանտայի, Ֆրիզեան կղզիներու եւ Հէլիկոլանտի եւ ուրիշ կղզիներու, Շլէզվիկ - Հոլշթայնի եւ Տանըմարքայի բոլոր գերման ուժերը: Երկրորդ՝ երբ այդ ընէք, պատրաստ եմ ձեզի հետ քննելու անձնատրութեան մանրամասնութիւնները: Երրորդ՝ եթէ չհամակերպիք առաջին կէտին, անձնատրութիւն, այն ատեն պիտի շարունակեմ պատերազմը եւ ուրախ պիտի ըլլամ այդպէս ընելով: Այն ատեն ձեր բոլոր զինուորները եւ քաղաքացիները կրնան սպաննուիլ:

Այսպէս հինգշաբթի կէս օրէն վերջ ժամը 4ին գերման պատուիրակները ելան գացին եւ ուրբաթ իրիկուն ժամը 6ին վերադարձան, ամբողջովին ընդունելով անպայման անձնատրութիւնը: Երբ «Մոթի» վրանը մտաւ, Գերմանները արձանի պէս նստած էին: Մառէշալը կարդաց անձնատրութեան պայմանները եւ Գերմանները ստորագրեցին, իսկ ինք փայտէ գրիչ մը առնելով ստորագրեց յանուն սպարապետ Այզընհաուըրի: Ամբողջ արարողութիւնը հինգ վայրկեան տեւեց եւ մէկ միլիոն Գերմաններ անձնատուր եղան:

*** Գերման զօրավար մը, հրամանատար Ա. բանակին, յայտարարեց թէ բանակը ուտելիք ունէր քանի մը օրուան համար, իսկ ժողովուրդը 2—2,250,000 հոգի, սովի մատնուած է:

## Եղանակներ

ՍԱՐՍԷԼ.— Վեց ամսուան տքնաջան փորձերէ վերջ, Ապրիլ 22ի կիրակի կէս օրէն ետք տեղի ունեցաւ մեր երգահանդէսը որուն անհամբեր կը սպասէր հասարակութիւնը: Երգչախումբի կազմութեան նախաձեռնողն էր Պ. Փ. Յովհաննէսեան, իսկ վարիչներն էին (կարմիր բանակի հայ գերիներէն) Պ. Պ. Լեւոն Պետրոսեան (Երեւանցի) եւ ընկ. Անդրանիկ Կարօեան: Ծնողքներու բարեացակամ տրամադրութենէն օգտուելով, կազմած էին քառասուն հոգինոց երգչախումբ մը:

Հանդէսը բացուեցաւ ժամը 3ին: Բեմին ճիշդ ճակատը զարդարուած էր ալեզարդ Մասիսի մեծադիր նկարով: Յոտնկայս երգուեցան «Մարսէյեէզ»ը եւ «Հայրենիք» խմբերգը, որոնց յաջորդեցին Վարդ կօշիկս, Խորհ. գարուն, Եար քո բարակ բոյին մեռնիմ, Կեանքը հայ գիւղում, Հայաստանի մարալ աղջիկ, Ես պուճուր, եարս պուճուր եւն.: Օր. Արաքսիի կողմէ սպանիական պար: Յետոյ հայկական եւ կովկասեան պարեր, ռուս երկսեռ խումբի մը կողմէ, գնչուական երգեր ու պարեր: Յաջողապէս ներկայացուեցաւ Օթէլլոյի վերջին արարէն հատուած մը: Մեր ծերունի եւ յարգելի քաղաքապետը, Mr. H. Meyer, խօսք առնելով, ըսաւ.— Կ'ուզէի հայերէն գիտնալ եւ այն մէկ երկու խօսքը որ պիտի ընեմ, հայերէն ըսել: Ապա իր գոհունակութիւնը յայտնեց հայ գաղութին որ փորձութեան աչաւոր 4—5 տարիներուն իր պարտականութիւնը լիովին կատարեց հանդէպ իր երկրորդ հայրենիքին եւ յոյս յայտնեց թէ այսուհետեւ եւս նոյն գիտակցութեամբ պիտի կատարենք մեր պարտականութիւնը: Քաղաքապետարանի կողմէ 5 հարիւր ֆրանքի նուէր մըն ալ ըրաւ հանդէսին որուն հասոյթը յատկացուած էր ռուս գերիներուն:

Մեծ բազմութիւն մը փութացած էր Փարիզի ամէն կողմերէն: Հանդիսականները մեծապէս քաջալերեցին ձեռնարկը, ափսէ մը թերթանուշ (փակլավա) աճուրդի դրուելով 30 հազարի բարձրացաւ: Այս գումարը երգչախումբին յատկացուեցաւ: Երկրորդ աճուրդ մը, Արարատի նկարը շրջանակով 18 հազարի բարձրացաւ:

Հանդէսը փակուեցաւ Պ. Լ. Պետրոսեանի «Լեզկինկա» պարով եւ հանդիսականները մեկնեցան գոհ սրտով: Միայն թէ կարգապահութիւնը թերի էր:

Օ. Կարապետեան

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՌԱՆԿՈՒՆ, Պուրմայի մայրաքաղաքը (Հնդկաստան), որ Ճափոնցիներուն ձեռքը անցած էր, ետ առնուեցաւ անգլ. բանակին կողմէ:

ՖՐ. ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՕՐ յայտարարուեցաւ Մայիս ամիսը: Ֆր. Կ. Խաչը, որ ունի 1,200,000 անդամ, 30 միլիոն կապոց (քօլի) ղրկած է գերիներուն եւ աքսորականներուն, ինչպէս եւ երեք միլիոն թոն ուտելիք: Ղրկած է նաեւ ութ միլիոն նամակ, չորս միլիոն կտոր հանդերձեղէն: Երախաներուն բաժնած է 2000 թոն խտացեալ կաթ:

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԱՐՀԵՍՏԱԿՑԱԿԱՆ խորհրդաժողովին մնայուն կեդրոնատեղին պիտի ըլլայ Փարիզ, ուր պիտի գումարուի յառաջիկայ նիստը, Սեպտ. 25ին: Կազմակերպութիւնը ունի 60 միլիոն անդամ:

ՖՐԱՆՍԱՅԻ խորհրդակցական ժողովին արտաքին գործերու յանձնաժողովը երեք օր խորհրդակցելէ վերջ, առաջարկեց կառավարութեան որ զինադադարի պայմաններուն մէջ դնէ հետեւեալ կէտերը.— Գերմանիա պէտք է անմիջապէս յանձնէ ուտեստի պահեստները, կառախումբերը, վակոնները, նաւերը, հում նիւթերը, մասնաւորապէս ածուխ, քարիւղ եւ ձգախէժ, հողագործական մեքենաներ եւ բազմաթիւ բանուորներ, գոհացնելու համար ճարտարագործութեան եւ հողագործութեան պահանջները: Գերման գերիները պէտք է անմիջապէս գործածուին երկրին վերաշինութեան համար, անոնց աշխատավարձքը պէտք է յանձնել Ֆրանսական բարեգործական կազմակերպութեանց: Սարի ածխահանքերը պէտք է անմիջապէս Ֆրանսայի յանձնուին անհրաժեշտ բանուորներով: Այդ շրջանը պէտք է Ֆրանսայի կցուի, Ռուրի շրջանը միջազգային վարչութեան մը: Յանձնաժողովը համաձայն չէ որ Հռենոս - Վեսթֆալիա անունով անկախ պետութիւն մը հաստատուի:

ԳՆԴԱԿԱՀԱՐՈՒԵՑԱՆ ոստիկանական տեսուչ Լիւսիէն Ռոթէ եւ Ֆէռնան Տավիտ,— «Ֆրանսայի Հիմլէրը»— որ մահուան դատապարտուած էին, հազարաւոր հայրենասէրներու արիւնը մտած ըլլալով:

ՏԱՆԸՄԱՐՔԱՅԻ նոր կառավարութիւնը կազմուեցաւ նախագահութեամբ ընկերվարականի մը, Վիլհէլմ Պուլ: Կառավարութիւնը խստօրէն պիտի պատժէ դաւաճանները, բայց ազդարարեց որ ժողովուրդը ինքնագլուխ գործեր չկատարէ:

ՊԱԼՔԱՆԵԱՆ ճակատի գերման սպարապետը, մառէշալ Ֆօն Վայքս, զոր Ամերիկացիները գերի բռնեցին վերջերս, պահանջուեցաւ Եուկօսլավիոյ կառավարութեան կողմէ, իբրեւ պատերազմի ոճրագործ:

ԾՈՎԱԿԱԼ ՏԷՕՆԻՑ, Հիթլէրի յաջորդը, հրամայեց գերման նաւային ուժերուն չխորտակել իրենց նաւերը, այլ սպասել նոր հրահանգի:

## ՀԱՅ ՄԱՐՏԻԿՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ

Երկար ատենէ ի վեր զգալի էր պահանջը կազմակերպելու միութիւն մը, բաղկացած ներկայ պատերազմին ֆրանսական բանակին մէջ ծառայող հայ զինուորներէ, երեք հիմնական նպատակներով.— ա) պաշտպանել հայ զինուորներու իրաւունքները, բ) զբաղիլ վերադարձող հայ գերիներու վիճակովը, ու վերջապէս գ) իբրեւ Ֆրանսային արիւն տուած 13,000նոց երիտասարդութիւն մը, համախորհուրդ ազգային իշխանութեանց հետ, պաշտպանել գաղութին ընդհ. շահերը պատկան իշխանութեանց առջեւ:

Ուստի մարտ 24ին Փարիզի մէջ տեղի ունեցաւ խորհրդակցական ժողով մը, որուն կը մասնակցէին նախ ներկայացուցիչներ Ալֆորվիլի 1939-40ի Ֆր. Բան. Հայ Մարտ. Միութեան կողմէ (առ այժմ 160 անդամ), ներկայացուցիչներ Շավիլի համանուն միութեան կողմէ (130 անդամ) եւ հայ զինուորներ բուն իսկ Փարիզէն: Այս առաջին խորհրդակցական ժողովին երկու ֆրանսացի ներկայացուցիչներ ղրկած էր Union Nationale des Combattantsի մեծ կազմակերպութիւնը:

Երկրորդ ժողովը տեղի ունեցաւ նորէն Միթիւալիթէի մէջ Ապրիլ 22ին, մասնակցութեամբ բազմաթիւ հայ զինուորներու: Օրակարգի գլխաւոր խնդիրներն էին, ա) կազմել անջատ, զուտ ազգային հայ զինուորներու միութիւն մը. բ) Միանալ նախկին Հայ Կամ. Միութեան. գ) Կազմել հայ զինուորներու երիտասարդական ճակատ մը ինքնավար, բայց իբրեւ հատուած Ֆրանսական U. N. C.ին: Այս բոլոր խնդիրները մանրամասն քննելէ վերջ, մեծամասնութեամբ որոշուեցաւ մաս կազմել U. N. C.ին՝ անշուշտ օգտուելով ինքնավար կազմակերպութեան մը բոլոր իրաւունքներէն: Այս առթիւ ընտրուեցաւ մարմին մը, որ պիտի ունենայ կեդր. վարչութեան մը իրաւասութիւնները, որպէսզի նախ յարաբերութեան մէջ մտնէ U. N. C.ին հետ եւ երկրորդ՝ կազմակերպէ համայն Ֆրանսայի Հայ Երիտասարդ Մարտիկներու Միութիւնը: Մարմնին անդամներն են. Յովիկ Եղիազարեան, Յարութիւն Փափազեան, Սէմէրճեան, Պետրոս Պետիկեան, Միքայէլ Զավուշեան, Բարսեղ Հապէշեան եւ Հր. Բալուեան: Առժամեայ հասցէ.— H. Palouyan, 43 Rue Richer, Paris (9), Tel. Pro. 25-46:

ՖՐԱՆՍԱՀԱՅ Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ՝ 13 Մայիս, կիրակի կէսօրէ վերջ ժամը 3էն 11, Jean Goujonի սրահներուն մէջ: Մուտք 100 Փրանք:

Le Gérant : H. AGONEYAN
Imprimerie DER-AGOPIAN, 17, Rue Damesme - 13e

